Ութը հազար համայնավար զինուորներ են որ կողոպտելէ յետոյ քաղաքը, կը գլխատեն հարուստները կամ պատանդներու փոխարէն, փրկագին կը պահանջեն։

Փէքինէն տրուած լուրի մը նայելով, Շանկ—Շայի կառավարական եւ օտար բոլոր շէնքերը, բացի Թղթատարական պաշտօնատունէն եւ հիւանդանոցէն, կողոպտուած եւ կրակի տրուած են։ Կը կարծուի թէ բազմաթիւ սպաննալներ կան։ Երկուշաբթի օր, համայնավարներն անցան այն կղզին ուր կը գտնուին հիւպատոսարանները եւ օտար հաստատութիւնները։ Զրոյց կը շրջի թէ գործադրած են ամէն ինչ այրելու իրենց սպառնալիքը։ Գլխատած են կառավարիչին եղբայրը եւ բազմաթիւ պաշտօնեաներ։

Ամերիկա ազդարարեց Նանքինի կառավարութեան թէ Շանթունկի մէջ, ամերիկեան հպատակներու կեանքի եւ ինչքի կորուստի պարագային, կը վերապահէ իր բոլոր իրաւունքները։

## Ջրհեղեղ մը Հնդկաստանի մէջ

Քարաշիի մէջ, աւելի քան հարիւր գիւղեր ողողուեցան։ 30,000 անձեր ապաստանած են Սօքքէր։ Հազարաւոր անձեր անապաստան մնացած են։ Հունձքերը եւ շէնքերը չափազանց վնասներու ենթարկուեցան, իսկ անասունի կորուստը անհաշուելի է։ Կարգ մը վայրերու մէջ, աւազակային մեծ խումբեր, կը կողոպտեն ու կը թալլեն։

## Աշխատաւորականներու պառակտումը

Լոնտոնէն տրուած լուրերու համաձայն, աշխատաւորականներու միջեւ պառակտում կը տիրէ եւ կարգ մը դժգոհներ կը փորձեն պաշտօնազուրկ ընել Մաքտոնալտը եւ Սնոտընը։ Գլխաւորաբար երիտասարդ երեսփոխաններ են, որոնց հետ են նաեւ, կը կարծուի, կառավարութեան երկու կարեւոր անդամները։

Դժգոհութեան գլխաւոր պատճառն է անգործներու թիւին տեւական յաւելումը, որուն հետեւանքով, կը վախնան կորսնցնելէ իրենց դիրքը, եթէ կառավարութեան կորովի մէկ քայլը չգայ հաւաստել ընտրողներուն, թէ լուծելու վրայ են այդ հարցը, համաձայն, ընտրական պայքարներու ընթացքին, իրենց տուած խոստումներուն։

Դժգոհները կը մտածեն կառավարութեան գլուխը բերել Հէնտըրսընը։

## Ընկերային ապահովագրութիւնները

Առեւտրական Նախարարը իր մօտ հրաւիրելով մամուլի ներկայացուցիչները, խօսեցաւ ընկերային ապահովագրութիւններու պատրուակով՝ գիներու անհամեմատ բարձրացման վրայ եւ յայտնեց թէ կառավարութիւնը չպիտի հանդուրժէ այդ երեւոյթին, որ շատ պարագաներու մէջ, զեղծումի կը հասնի։

Միւս կողմէ սակայն, օրէնքին դէմ դժգոհութիւնները կը սաստկանան ու կը ծաւալին։ Ներկայիս գործադուլը կը ներկայացնէ հետեւեալ պատկերը։

ՀԻՒՍԻՍԻ ՄԷՋ.— Լիլի մէջ, ուր 6000 գործաւորներ ցոյց մը կազմակերպեցին, բանուորական եւ գործատիրական երկու խառն հաւաքոյթներ չկրցան ելքի մը գալ։ Նոր բանակցութիւն մը եւս մտադրուած է։ Ռուպէի եւ Թուրքուանի մէջ, որոշուեցաւ Աշխատանքի Նախարարութեան դիմել, իրաւախոհութեան մը համար։

Միլլոյի մէջ (Թառն) 5000 հոգի գործադուլ յայտարարեցին, պահանջելով հարիւրին 10 յաւելում օրավարձքերու վրայ։

Թրիթ-Սէն-Լէժէի մէջ 48 ժամ պայմանաժամ տրուեցաւ գործատէրերուն, գոհացում տալու համար բանուորներու պահանջին։

ՊԱՍ-ՍԷՆ.—Մոնվիլի մէջ, 3000 հոգի ցոյց մը կատարեցին, իսկ Էլպէօֆի մէջ, քաղաքապետը գործաւորներուն արգիլեց կարմիր դրօշ պարզել, և «Միջազգայինը» երգել։ Նոյնպէս 3000 հոգինոց ցոյց մը։

ԷՆԻ ՆԱՀԱՆԳ.— Սէն-Քանթէնի մէջ ուր 6000 բանուորներ բողոքի հաւաքոյթ մը կազմակերպեր էին, 1000 հոգի եւս միացան ցուցարարներուն։

ՓԱՐԻԶԻ ՇՐՋԱՆ.— Սէն-Տընիի կաշիի եւ մորթի գործարանի մը 1800 բանուորները բանթող յայտարարեցին։

## Նորէն փոթորիկ

Ամրան վերջը կը մօտենայ եւ տակաւին Ֆրանսա, գրեթէ արեւ չտեսաւ։ Չմնաց շրջան մը որ ողողումի, փոթորկի ու մրրիկի ենթարկուած չըլլայ քանիցս, այս մէկ քանի ամիսներու ընթացքին։ Հունձքերը մեծ վնասներ կրած են եւ կարգ մը շրջաններու մէջ, բոլորովին վտանգուած են։ Եւ դեռ շատ վայրերէ, փուքի ու փոթորկի լուրերը իրարու կը յաջորդեն։

Սէնթ-Մէնհուի շրջանը տեղատարափ անձրեւի մը բռնուեցաւ երէկ գիշեր. երդիքներ փլան ու ծառեր արմատախիլ եղան։ Փարիզ-Պալ ճեպընթացը ստիպուեցաւ կանգ առնել կարսախի առջեւ։ Հեղեղը խափանած էր երկաթուղին ցեխի ու փայտի կոյտերով։ Ջուրը այնքան բարձր էր որ կառքերուն մէջ կը մտնէր։ Այդ շրջանին մէջ քանի չափ գիւղեր ողողուած են։ Հունձքը բոլորովին փճացած է։ Նոյնպէս Փուաթուլի շրջանը, ուր վնասը 10 միլիոնի կը հասնի։

## ՄԱՆՐ ԼՈՒՐԵՐ

ՎԵԶՈՒՎ ԿԸ ԲՈՐԲՈՔԻ.— Երկու օրէ ի վեր, Վեզուվի հրաբուխը վերաբորբոքման նշաններ ցոյց կուտայ, սարսափի ենթարկելով երկրաշարժէն վնասուած շրջանները. հսկայ բոցեր կը ժայթքին խառնարանէն։

ԷՑԻՐՆԷԻ ՓՈԹՈՐԻԿԸ.— Անցեալ շաբթու կարկուտի մրրիկ մը քանդեր էր կարգ մը մզկիթներու մինարէները։ Առջի օր բուռն փոթորիկ մը մեծ վնասներ հասցուց քաղքին։ 20 մեռեալներ եւ հարիւրաւոր վիրաւորներ կը համրուին։

ՌՈՒՍԻԱ ՄԱՍՆԱԳԷՏ ԿԸ ՓՆՏՌԷ.— Խորհրդային կառավարութիւնը որոշեց Ռուսիա կանչել գերմանացի 200 ճարտարագէտներ եւ 1000 մասնագէտներ, աշխատցնելու համար մետաղագործական սէնդիկայի հաստատութիւններուն մէջ։



IMPRIMERIE - MASSIS - ÉD...
208bis, Rue Lafayette Paris

Le Gérant H. STEPHA...

ուրրակները հաստատեցին երկու երկիրներու միջեւ մաքսային միութեան մը օգտակարութիւնն ու կարելիութիւնը: Մշակեցին նախապատրաստական միջոցներու ծրագիր մը, որ պիտի ենթարկուի երկու երկիրներու կառավարութեանց հաւանութեան: Ծրագիրը գործադրութեան պիտի դրուի սեպտ. 1ին: Ջանք պիտի թափուի որ Եւրոպայի շուկաներուն մէջ նախընտրութիւն տրուի Ռումանիոյ եւ Եուկօսլաւիոյ երկրագործական արտադրութիւններուն: Մասնագէտներ պիտի աշխատին այս ծրագրին իրականացման:

Ջեխօսլովաքիոյ տեղեկութիւն պիտի դրուի խորհրդաժողովին աշխատանքներուն մասին:

## Ընդհ. գործադուլ Հիւս. Ֆրանսայի մէջ

Անցեալ շաբթու Ռուպէ-Թուրքուանի բանուորները դիմեր էին Աշխատանքի Նախարարութեան, անոր միջնորդութեամբ կարգադրելու իրենց եւ գործատէրերու միջեւ վէճը, որ ծագեր էր ընկ. ապահովագրութեանց առթիւ:

Բանակցութիւնները ու Նախարարին միջամտութիւնն ալ ձախողեցան: Այս պատճառով ալ Լիլի շրջանի բանուորները զանազան հաւաքոյթներու մէջ, լսելէ յետոյ իրենց պատգամաւորներուն զեկոյցը որոշեցին ընդհ. գործադուլ յայտարարել եւ զայն կիրարկել երէկ, երկուշաբթի առտուընէ սկսեալ:

Այս որոշման հետեւանքով, կ'ենթադրուի թէ մօտ 150 հազար բանուորներ պիտի դադրեցնեն աշխատանքը:

Կառավարութիւնը միջոցներ ձեռք առած է արգիլելու համար հաւանական խռովութիւններ: Արդէն 600 հոգինոց ոստիկան զօրքերու խումբ մը հասաւ Լիլ: Իւրաքանչիւրը 30ական հոգինոց 50 դասակներ եւս պիտի ղրկուին:

## Նոր կռիւներ Հնդկաստանի մէջ

Հնդիկ ազգ. խորհուրդի Նախագահ Վալլապհայի Փաթէլի գլխաւորութեամբ, հսկայ ցոյց մը կատարուեցաւ Պոմպէյի մէջ անցեալ գիշեր: Ցուցարարները գործադրեցին ընդդիմութեան նոր եղանակ մը, Թաղերու գլխաւոր փողոցներուն մէջտեղը կկզած նստելով եւ այդպէս արգիլելով երթեւեկը:

Հեղեղանման անձրեւ կը տեղար երբ ցոյցը սկսաւ. սակայն ցուցարարները առանց ազդուելու անձրեւէն, շարունակեցին իրենց ցոյցը, կրօնական երգեր երգելով:

Ոստիկանութիւնը միջամտեց եւ ամէնէն առաջ ձերբակալեց Վալլապհայի Փաթէլը, անոր աղջիկը եւ ուրիշ ղեկավար մը՝ Մալաւիա եւ յետոյ ամբոխին ուղղեց ազդարարութիւններ որոնք անհետեւանք մնացին:

Կացութիւնը աւելի ծանրացաւ երբ մէկ ու կէս քիլոմէդրի վրայ սեղմ շարքերով կկզած հնդիկները մերժեցին շարժիլ:

Ոստիկանութիւնը յարձակում գործեց գաւազաններով: Վիրաւորուեցան 200 անձեր, որոնց մէջ նաեւ կիներ: Նոյնքան անձեր ալ ձերբակալուեցան:

Փաթէլի ձերբակալման հետեւանքով. Հնդիկ Ազգ. Խորհուրդը սուգի օր յայտարարեց: Բամպակի հիւսկի գործարաններ անմիջապէս դադրեցուցին ամէն աշխատանք:

## Ռուսական ապրանքներուն դէմ արգելքը

Ամերիկա վերցուց խորհրդային ապրանքներու դէմ դրուած արգելքը: Փայտի խմոր բեռցած 70 նաւեր պիտի կրնան իրենց բեռը պարպել ամերիկեան նաւահանգիստները: Արգելքին այս վերացումը սակայն չպիտի դադրեցնէ «բռնի աշխատանքով» արտադրութեան եւ փայտի խմորի պատրաստութեան դէմ բացուած քննութիւնը:

## Խորհրդային մամուլին բողոքը

Խորհրդային թերթերը բողոքի բուռն յօդուածներ կը հրատարակեն Միացեալ Նահանգներուն դէմ, ռուսական ապրանքներու վրայ դրուած արգելքին հետեւանքով: «Պրաւդա» կ'ըսէ թէ խորհրդային ճարտարարուեստի դէմ այս պայքարին պատճառն այն է որ կը վախցուի թէ հնգամեայ ծրագրի իրականացումով, Խորհրդային Միութիւնը պիտի կրնայ Միացեալ Նահանգներու դէմ կռուիլ, աշխարհի շուկաներուն վրայ:

## Ֆրանքօ-լեհական համաձայնութիւն մը

Ֆրանսայի եւ Լեհաստանի միջեւ կարեւոր համաձայնութիւն մը կնքուեցաւ օդանաւային հարցերու շուրջ, հետեւեալ կէտերու վրայ:

Փոխադարձութեան հիման վրայ, երկու երկիրներու միջեւ, օդանաւային գիծերը պիտի շահագործուին մէկը ֆրանսական միւսը լեհական երկու ընկերութիւններու կողմէ:

Երկու կողմերը հաւասարապէս պիտի օգտագործեն արհեստագիտական պէտքերու համար հիմնուած կայանները:

Օդանաւերու յատուկ կազմածներու եւ գործիքներու վրայ մաքսային դիւրութիւններ պիտի տրուին: Օդանաւային արկածներու կամ պարտադիր վայրէջքի ընթացքին փոխադարձ օգնութիւն: Թղթատարի փոխադրութիւն:

Համաձայնութիւնը գոյացած է հինգ տարուան պայմանաժամով եւ հինգական տարի երկարաձգուելու նախատեսութեամբ, համաձայն 1919 հոկտ. 31ի օդանաւային միջազգային դաշինքին:

## Ֆրանքօ-ռուս առեւտր. յարաբերութիւնները

Փարիզի խորհրդային առեւտրական ներկայացուցիչը Թումանօֆ մօտ օրէն կը մեկնի Մոսկուայէն, ուր խորհրդային իշխանութեանց հետ, ֆրանքօ-ռուս առեւտրական յարաբերութեանց զարգացման վերաբերեալ ընդարձակ ծրագիր մը մշակած է:

Ի միջի այլոց, նախատեսուած է Ֆրանսա մտցնել խորհրդային այն ապրանքները, զորս Ամերիկա կը մերժէ ընդունիլ: Այդ ապրանքները բաղկացած են գլխաւորաբար փայտէ, փայտի խմորէ, զանազան մետաղներէ եւ ածուխէ ու կ'արժեն մօտաւորապէս 1 միլիոն անգլիական:

## ՄԱՆՐ ԼՈՒՐԵՐ

ՃԱՓՈՆԻ ՈՂՈՂՈՒՄՆԵՐԸ.— Հնդը. Ճափոնի մէջ նոր ողողումներու հետեւանքով 15 անձեր խեղդուեցան: Հազարէ աւելի տուներ փլան:

ՌՈՒՍՈ-ԻՏԱԼԱԿԱՆ ՀԱՄԱՁԱՅՆՈՒԹԻՒՆ.— Ռուսիոյ եւ Իտալիոյ միջեւ համաձայնութիւն մը կնքուեցաւ ի նպաստ իտալական ճարտարարուեստի արտադրութեանց գնման, Ռուսիոյ կողմէ:





























IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS

208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H. STEPHAN







որոնց շնորհիւ ապստամբները մինչեւ Բապաք Թէփէնետապնդուեցան: Նոր ուժեր կը ղրկուին այդ սահմանները:

ԷՆՆԻԻՐԻ.— Բէմալէտտին Սամի փաշան Արեւելեան Նահանգներու զինուորական ընդհանուր հրամանատար կարգուեցաւ եւ մեկնեցաւ առջի օր: Ապստամբական շրջաններուն մէջ պաշարման վիճակ յայտարարուեցաւ:

ՄՈՍԿՈՒԱ.— Ռուսական «Իզվէսթիա» թերթը իր Պարսկաստանի ներկայացուցչին միջոցաւ հաստատած է թէ Լոնտոնէն Թէհրան մեծ քանակութեամբ դրամ ղրկուած է, բաժնուելու համար քիւրտ ապստամբներուն: Այդ դրամները ամիսներ կրնան բաւել քրտական ապստամբութեան:

ԷՆՆԻԻՐԻ.— Կ'ըսուի թէ Զինուորական Խորհուրդի անդամներէն Ճէվատ փաշա ոչ-զինուորական կարեւոր պաշտօնի մը պիտի կոչուի Արեւելեան Նահանգներուն մէջ:

⁂ Մարտինէն կը հեռագրեն թէ քիւրտ էլխասի հրոսախումբը, 50 հոգի, որ հարաւէն կ'անցնէր, Տիյրիկի մէջ անձնատուր եղաւ կառավարութեան:

⁂ Կ'ըսուի թէ արտաքին գործավարութիւնը թուրքերէն եւ ֆրանսերէն լեզուներով «Կարմիր Գիրք» մը պիտի հրատարակէ արեւելեան ըմբոստութեան ներքին ծալքերուն մասին:

## Իրանական թերթերը այսպէս գրեն

ԹԷՀՐԱՆ.— Պարսիկ պաշտօնական շրջանակները կը հերքեն այն լուրը թէ թուրք զինուորները, հետապնդելով ապստամբները, ներս խուժեցին պարսիկ սահմանէն: Պարսիկ պաշտօնատարներ կը յայտնեն թէ Թուրքիոյ վերջին ծանուցագիրը պարզապէս կը խնդրէր պարսիկ կառավարութեան գործակցութիւնը, զսպելու համար Քիւրտերը, եւ ոչ մէկ խօսք կ'ընէր սահմաններու սրբագրութեան մասին:

Ներկայիս բազմահազար պարսիկ զինուորներ կը պաշտպանեն սահմանին երկայնքը:

Միւս կողմէ պարսիկ իշխանութիւնները կը հաղորդեն թէ շաբաթ մը առաջ Քիւրտերը ասպատակեցին պարսիկ հողերուն վրայ, յետոյ իրենք իրենց մէջ կռիւ ունեցան, դէպքին վայրը ձգելով քանի մը սպանեալներ: Անկէց ի վեր ոչ մէկ Քիւրտ կրցաւ անցնիլ սահմանը:

⁂ Խալիտ աղայի ցեղախումբէն բազմաթիւ Քիւրտեր կռիւի մտան պարսիկ զինուորներուն հետ: Սպաննուեցան 300 Քիւրտեր եւ 40 Պարսիկներ:

## Քիւրտերը յարձակողականի սկսան

ՊԱՅԱԶԻՏ, 18 օգոստոս.— Աղրիտաղի քիւրտ հրոսախումբերը յարձակեցան Թաշպրունի վրայ: Թուրք զինուորները ետ մղեցին այս յարձակումը, որու ընթացքին Քիւրտերը ունեցան 66 մեռեալ եւ 100 վիրաւոր: Սպաննուածներուն մէջ կը գտնուին երեք ղեկավարներ:

Էմիր Թումէնը, գրգռութեան կազմակերպիչը, զոր պարսիկ կառավարութիւնը հեռացուցած էր սահմանային շրջաններէն, դարձեալ փոխ-կառավարիչ նշանակուեցաւ Քիլիսքէնդի, որ կը գտնուի սահմանին վրայ:

ԷՆՆԻԻՐԻ, 18 օգոստ.— Թուրք կառավարութիւնը, նոր ծանուցագրով մը, պարսիկ կառավարութեան ներկայացուց առաջարկ մը, անհրաժեշտ նկատելով գործակցութիւն մը Արարատի շուրջ եւ պարսկական հողի վրայ զինուորական գործողութիւններու ընթացքին:

Թուրքիա պիտի սպասէ Թէհրանի պատասխանին, ետքէն ղրկելու համար նոր ծանուցագիր մըն ալ, որուն գլխաւոր գիծերը ճշդուած են արդէն:

## Յարձակում նոյնպէս Սուրիոյ սահմանէն

Թրքական աղբիւրներէ առնուած լուրերու համաձայն սուրիական սահմանէն ալ յարձակումներ սկսած են: Թուրքերը սկսած են մեծ թիւով զինուորներ կեդրոնացնել Այնթապ, ուրկէ անոնք կը ղրկուին սուրիական սահմանը: Այս հաշիւով Թուրքերը ստիպուած կ'ըլլան Տէօթ-Եօլէն մինչեւ Աղրի, Սուրիա-Իրաք-Պարսկաստան սահմանին երկայնութեամբ զօրք կեդրոնացնել եւ միեւնոյն ժամանակ ալ կռուիլ ներսի ապստամբներուն հետ, Վանէն Մուշ—Սասուն եւ Տիարպէքիրէն Տէրսիմ եւ Աղրի:

## Կռիւները Հնդկաստանի մէջ

Փէշավէրէն հասած տեղեկութիւններու համաձայն, ըմբոստ Աֆրիտիները պարպած են Քաժուրիի դաշտավայրը, ինչպէս նաեւ Պարայի հովիտը:

Հիւսիս արեւմտեան սահմանին վրայ, ըմբոստները ընդհանուր նահանջ մը կը կատարեն: Քանի մը գիւղերու օդէն ռմբակոծումը բաւական եղաւ յառաջացնելու այդ նահանջը: Ռմբակոծումը կատարուած է չափազանց անգթութեամբ, այնպէս որ Պարայի հովիտին մէջ ոչ մէկ ցեղախումբ պիտի համարձակի այլեւս թշնամութեանց մասնակցիլ:

## Համայնավար լրտեսներ Ճափոնի մէջ

Թոքիոյէն կը հեռագրեն թէ ձերբակալուեցան 8 հոգի, մէկը գծագրիչ, եօթը ընդհ. սպայակոյտին քաղաքային գրասենեակներուն մէջ պաշտօնեայ: Բոլորն ալ ամբաստանուած են թէ կը պատկանին համայնավար կուսակցութեան եւ պաշտօն ունէին զինուորական գաղտնիքներ կորզել: Ասոնք նոյն ատեն ըմբոստութեան մղած են զինուորները:

## Օգնութիւն անգլիական նաւու մը

Անգլիական թղթատար նաւ մը, «Թահիթի», որ 7,888 թոնօ տարողութիւն ունի, Ուէլինկթընէն Սան Ֆրանչիսկօ գացած պահուն, Խաղաղական Ովկիանոսին սիրտին վրայ կորսնցուց իր պտուտակը եւ մատնուեցաւ ալիքներուն քմահաճոյքին:

Անմիջապէս օգնութեան հեռագիր ղրկեց ամէն կողմ:

Վերջին հեռագիրները կ'ըսէին, որ ջուրը արդէն սկսեր էր խուժել պտուտակին ծակէն, եւ ջրհանները անբաւական կը թուէին ջուրը պարպելու: Արդէն մեքենաներու սրահը ողողուած էր:

Վերջին հեռագիր մը կ'ըսէր թէ հրամանատարը որոշած է լքել նաւը, նաւակներուն մէջ իջեցնելով 165 ճամբորդները:

Բազմաթիւ նաւեր ղրկուեցան օգնութեան: Առաջին հասնող նաւը իր մէջ առաւ ճամբորդները: Եւ երբ միւս նաւերն ալ հասան, «Թահիթի», ընկղմելու մօտ, տխրագին կը ծփար ջուրերուն վրայ:

## ԼՈՅՍ ՏԵՍԱՒ







### ՆԱՄԱԿԱՏՈՒՓ

ՍՏԱՑԱՆՔ

Մալաքօֆ, Վ. Ե.— 140:

Ռուան, Գործ.— 236:

Սուլթանապատ, Տոքթ. Ա. Գ.— 240:

Թէհրան, Գործ.— 500:

Կրընոպլը, Ս. Շ.— 70:

Մօնթրէօյ Սու Պուա, Օ.Գ.—70:

Քլամառ, Մ. Ա.— 70:

Նէօյեի, Իշխ. Յ.— 40:

Նանթ, Գ. Ս.— 35:

Շէրպուրկ, Հան. 35:

Փարիզ, Մ. Ն.— 60:

Մարսէյլ, Տօքթ. Ռ.— 70:

Բան, Մ. Ս.— 17.50:

### ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— կը փնտռուի Յարութիւն Սիրմէնեան: իմացնել «Յառաջ»ի վարչութեան:









Հ. Յ. Դ. Ս. Շամոնի գրադարանը, 15 Rue Jeanne d'Arc, բաց է ամէն Հինգշաբթի 7—8 իսկ կիրակի օրեր 11—12:








Le Gérant H. STEPHAN

## Թուրքիա Ազգ. Դաշնակցութեան մէջ

ԼՈՆՏՈՆ, 23 օգոստ.— Թուրքիոյ արտաքին քաղաքականութեան մէջ, մեծ փոփոխութիւններ կը պատրաստուին այս միջոցիս, Էնկիւրիի իրաւասու շրջանակներուն կողմէ։ Մասնաւորաբար, հաւանական կը նկատուի Թուրքիոյ Ազգերու Դաշնակցութեան մէջ մուտքը։

Կը կարծուի թէ Թուրքիոյ արտաքին գործավար Թէվֆիք Րիւշտիի Մոսկուա այցելութեան նպատակն է համոզել Խորհրդային իշխանութիւնը որ Թուրքիան զերծ կացուցանէ քանի մը տարի առաջ Չիչէրինի տրուած խոստումէն, որով յանձնառու կ'ըլլար հեռու մնալ Ազգերու Դաշնակցութենէն։

Այս լուրը որ հաղորդուած է Պերլինի ճամբով, կը հաստատէ թէ Անգլիա եւ Գերմանիա մանաւանդ, պնդած են որ Թուրքիա հրաժարի ժընեւի ժողովին հանդէպ բռնած իր մեկուսացման քաղաքականութենէն։

## Ֆէթհի պէյի պայքարը

Ֆէթհի պէյ սկսաւ Ըսմէթ փաշայի դէմ իր պայքարին։ Նոր յայտարարութիւններով, կը մեղադրէ կառավարութիւնը թէ անտարբեր գտնուած է ժողովուրդին շահերուն հանդէպ, ծանր տուրքերով կը ջլատէ երկրագործութիւնը եւ այս կերպով, մեծ վնաս կը հասցնէ անհատական դրամագլուխին։ Ու նաեւ, Ֆէթհի կը ջանայ ապացուցանել թէ կառավարութեան քաղաքականութիւնը սխալ է եւ վնասակար Թուրքիոյ համար, ու համոզուած է թէ կուսակցութիւնը շատ չանցած պիտի յաջողի ձեռք անցնել կառավարութեան ղեկը։

## Ռուսաթուրք յարաբերութիւնները

Թուրք արտաքին գործավարը Թէվֆիք Րիւշտի, ռուսական «Թասս» Գործակալութեան բրած իր մէկ յայտարարութեամբ, յայտնեց թէ որ եւ է նոր բարեկամութիւն որ պիտի պահանջէր հին բարեկամութեանց դրժումը, կը նկատէ անարժէք։

Թուրքիոյ եւ Ռուսիոյ մէջ, քաղաքական վարչաձեւի փոփոխութիւն մը միայն պիտի կրնայ տեղի տալ նման փոփոխութեան մը՝ ռուսաթուրք յարաբերութեանց մէջ։

Րիւշտի այս յայտարարութիւններն բրած է իբր նախաբան նոր ճանաչումներու կամ խորհրդակցութիւններու, զորս պիտի կատարէ սեպտեմբերին՝ դէպի Մոսկուա ճամբորդութեան մը ընթացքին։

## Պուլկարիոյ Ազգ. Խորհուրդը

ՍՕՖԻԱ, 23 օգոստ.— Երկրագործականները, ազատականներն ու արհեստաւորականները Պուլկարիոյ վարչապետին յանձնեցին խնդրագիր մը, Ազգ. ժողովը հրաւիրելու համար բացառիկ նիստի մը։

Վարչապետ Լիափչէֆ մերժեց ընթացք տալ, այն առարկութեամբ թէ ցոյց տրուած պատճառները բաւական չեն բացառիկ նիստի հրաւիրելու Խորհրդարանը։

## Պաղեստին միշտ խռով

Երուսաղէմի Արաբները բողոքելու համար ի նպաստ Հրեաներու տրուած կարգ մը վճիռներու դէմ, 24 ժամուան ընդհանուր գործադուլ յայտարարեցին։ Բազմաթիւ խանութպաններ դադրեցուցին որեւէ առեւտրական գործողութիւն։ Ոստիկանական զինեալ խումբեր կը հսկեն Երուսաղէմի գլխաւոր անցքերուն վրայ։ Որեւէ միջադէպ չէ պատահած ցարդ. բայց ժողովուրդը չափազանց գրգռուած է բրիտանական իշխանութեան դէմ եւ հաւանական է որ մէկ պահէն միւսը խռովութիւններ ծագին Պաղեստինի մէջ։

## Ընկերվ. Բ. Միջազգայինը

Ընկերվարական Բ. Միջազգայինի Գործադիր Մարմինը, որ այս օրերս Ցուրիխի մէջ ժողովի նստած էր, վերջացուց իր աշխատանքները։ Գործադիրը միաձայնութեամբ քուէարկեց բանաձեւ մը, որով կը հրաւիրէ սէնտիքաներու միջազգային միութիւնը որ յանձնախումբ մը կազմէ, մշակելու համար գործունէութեան ծրագիր մը, ու նաեւ հրաւիրելու համար միջազգային համագումար մը, գործաւորական բոլոր կազմակերպութեանց մասնակցութեամբ։

Կազմուեցաւ յանձնախումբ մը, ֆրանսացի եւ գերման ընկերվարականներու մասնակցութեամբ. Սարի հարցին լուծումը գնելու համար գործնական հիմերու վրայ։

Միջազգայինը անդրադառնալով քրտական ապստամբութեան, բանաձեւով մը, ամբողջ աշխարհի ուշադրութիւնը կը հրաւիրէ իրենց ազատագրութեան համար պայքարող Քիւրտերուն դէմ գործուած ջարդերուն վրայ։

Ֆրանսայի համայնավարներու օրկանը «Իւմանիթէ» անդրադառնալով Բ. Միջազգայինի այս բանաձեւին, հեգնանքով ու դառնութեամբ դիտել կուտայ.— Գերապացուցուած է թէ Քիւրտերու նոր ըմբոստութիւնը կազմակերպուած է անգլիացի գործակալներու, մասնաւորաբար Լօրէնս կոչուած աղխտաբեր մարդուն կողմէ, անոնց նիւթական օժանդակութեամբ, թէ Անգլիոյ նպատակն է Քիւրտիստանը վերածել միջնորմպետութեան մը, որուն գործը պիտի ըլլայ խարխուլ ծառայել Խորհ. Միութեան դէմ ձեռնարկուելիք գործադրութիւններու և դառնալ սադրանքներու բոյն մը՝ ընդդէմ Թուրքիոյ»։

Բ. Միջազգայինի համագումարը տեղի պիտի ունենայ 1931 յուլիսին, Վիեննայի մէջ։

## Հապսպուրկներու դէմ

Հունգարիոյ կառավարութեան կողմէ Հապսպուրկեան Տան գահաժառանգին դէմ ձեռք առնուած միջոցները զայրոյթի մատնած են հունգար արքայականները, որոնք կը սպառնան բուռն պայքար մը բանալ պատերազմական նախարարին դէմ։

Միւս կողմէ, կը հերքուի թէ Օթթօ իշխանը թագաւոր ձեռնադրուած ըլլայ Հունգարիոյ վրայ։

Արքայականներու պետերէն մէկը թերթի մը յայտնեց թէ «ծիծաղելի է ենթադրել որ Օթթօ իշխանը պիտի ուզէ գաղտնօրէն մտնել Հունգարիա. իշխանը պէտք է մտնէ ազատօրէն եւ ամբողջ ժողովուրդին հաւանութեամբ»։



## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— Տ. Տօնապետեան Մօրենիկցի (Խարբերդ), կը փնտռէ իր մօտիկ ազգականը Մօրենիկցի, Յարութիւն Խաչատուրեան։ Մօտաւորապէս մէկ տարի է կը գտնուէր Պուքրէշ (Ռումանիա)։ Կը խնդրուի տեղեկութիւն ունեցողներէն իմացնել հետեւեալ հասցէին, Տօնապետեան, 5 Rue Balthazar Baro, Valence (Drôme)։

ԴՊՐՈՑԱՍԷՐԻ Սանուց Միութեան պարգեւները շահած են։

50, 75, 85, 91, 129, 130, 135, 171, 180, 198, 199, 217, 218, 225, 226, 229, 289, 327, 350, 361, 366, 387, 420, 465, 480, 484, 518, 541, 560, 595, 602, 666, 710, 732, 756, 791, 821, 834, 859, 872, 881, 892, 898, 905, 909, 990, 993, 1003, 1016, 1036, 1040, 1094, 1106, 1110, 1113, 1125, 1139, 1150, 1181, 1200, 1217, 1275, 1294, 1315, 1321, 1377, 1413, 1424, 1470, 1487, 1529, 1544։

1003 թիւը շահած է ծածկոցը։ Նուէրները ստանալու համար դիմել վարժարանի հասցէին։ Ecole Tebrotzassère, 1 Bld. du Nord, Le Raincy, S.etO.

ՆԱՄԱԿ ունի Արշամ Պօղոսովիչ Փափազեան իր քրոջմէն Սօֆիա Թուման եանէ (Պաթում) Ստանալու համար դիմել Mr. Palnikoffի, 121 Rue de Flandre Paris (19)։


IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H. STEPHAN


Հ. Յ. Դ. Ս. Շամոնի Գրադարանը, 15 Rue Jeanne d'Arc, բաց է ամէն Հինգշաբթի 7—8 իսկ կիրակի օրեր 11—12։

մանաւանդ ասուեղէնը, ղեղագործական արտադրութիւնները եւ երկրագործական մեքենաները եւ հոտերը։ Ռումանիա իր կարգին մաքսատուրքի որոշ նուազումներ պիտի ստանայ եւ գիւղատացորենի ներածումներուն վրայ։

Այս պայմանագրութեամբ, երկու կողմերը յանձն կ'առնեն ուսումնասիրել ռումանական ծխախոտի եւ անգուտ կամ զուտ քարիւղի Ֆրանսա ներածման պայմանները։ Այս վերջին խնդիրը պիտի ուսումնասիրուի երկու երկիրներու մասնագէտներուն կողմէ։

## Ցուրտէն վերջ, անտանելի տաք

Ամբողջ գարնան եւ ամրան ընթացքին, ամպոտ երկնքի մը տակ, ցուրտ ու խոնաւ օդերէ յետոյ, Ֆրանսա սկսած է նեղուիլ անտանելի տաքերէն։ Ջերմաչափը երեքշաբթի օր Փարիզի մէջ ցոյց կուտար 31 աստիճան, չորեքշաբթի բարձրացած էր 33ի, հինգշաբթի 33,7ի, ուրբաթ օր 33,5։

Երէկ Փարիզի փողոցներուն մէջ, 15ի չափ անձեր շնչահեղձ ինկան գետին։ Անոնցմէ ոմանք փոխադրուեցան հիւանդանոց. միւսները նախնական դարմանումներ ստացան դեղարաններու մէջ։ Քաէնի մէջ, ուր շուքին տակ 32, արեւուն տակ 52 աստիճան տաքութիւն կը տիրէ, արեւահարութեան բազմաթիւ դէպքեր պատահեցան։

Հռոմի մէջ եւս սաստիկ տակ կը տիրէ։ շուքին մէջ 35 աստիճան։ Սպանիոյ Պիլպաօ քաղաքին գործարանները ստիպուեցան դադրեցնել աշխատանքները տաքին հետեւանքով։

## Պոմպէյի մէջ կացութիւնը կը ծանրանայ

Տէլհիէն «Թայմզ»ի կը հեռագրեն թէ Հնդիկ Ազգ. Խորհուրդի կոմիտէին տասը անդամները դատապարտուեցան 6ական ամիս բանտարկութեան։ Նոր կոմիտէն կազմուեցաւ վեց հինդիկներէ եւ վեց մահմետականներէ, Խալիլ Իւլ Զամանի նախագահութեամբ։

Պոմպէյի Եւրոպացիներու Ընկերակցութիւնը Նոր բանաձեւ մը քուէարկեց, որով կը պահանջէ որ Հնդիկ Ազգ. Խորհուրդը յայտարարուի յեղափոխական կազմակերպութիւն եւ անոր ինչքերն ու դրամը գրաւուին կառավարութեան կողմէ։

Կառավարութիւնը յայտարարութեամբ մը կը զգուշացնէ ժողովուրդը որ մաս չկազմէ ապօրէն նկատուած թափօրներուն։ Բայց Հնդիկ կոմիտէն որոշեց նկատի չառնել Մէյտան կոչուած հրապարակին վրայ՝ կամաւորներու հաւաքման դէմ դրուած արգելքը եւ կիրակի օրուան համար, կազմակերպած է ազգ. դրօշին յարգանքի արարողութիւն մը։ Ազգ. Խորհուրդի կոմիտէին անդամներուն ձերբակալման առթիւ սուգի օր յայտարարուեցաւ արդէն։ Հնդիկ եւ իսլամ թաղերուն մէջ, բոլոր խանութները գոցուեցան, ինչպէս նաեւ բազմաթիւ դպրոցներ։

## Գերմանիոյ ելեւմուտքին շուրջ

Գերման դահլիճը երէկ վերջացուց ելմտական ծրագրի շուրջ իր խորհրդակցութիւնները։ Ըստ պաշտօնական զեկոյցի մը, կառավարութեան բոլոր անդամները սկզբունքով ընդունած են ելմտական նախարարին առաջարկած բարեփոխումները, որոնք պիտի ներկայացուին Խորհրդարանին երբ քաղաքական պայմանները թոյլ տան։ Ահա այդ ելմտական ծրագրին գլխաւոր գիծերը.— ա) զգալի չափով նուազեցնել 1930-31ի ելեւմուտքը. բ) բնակարանային նեղութեան դէմ պայքարելու համար, քանի մը տարիներու ընթացքին իրականանալու պայմանով, կառուցանել աժան բնակարաններ եւ գործաւորական գաղութներ. գ) ելեւմուտքի հաւասարակշռութիւնը պէտք չէ խախտի անգործներու տրուած նպաստներով, դ) Եկամուտներու նոր բաշխում մը պիտի կատարուի, հարկային դրութիւնը պիտի բարեփոխուի, եւ մինչեւ 20,000 մարք հարըստութեան վրայ տուրք չպիտի գանձուի։ Ատկից զատ, պաշտօնեաներու թոշակները վերաքննութեան պիտի ենթարկուին, 5) Տոկոսի սակը պիտի զեղչուի։










IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H. STEPHAN

# ԹԷՅԱՍԵՂԱՆ

Ի ՊԱՏԻՒ Հ. Յ. Դ. ՓԱՐԻԶԻ ԴՊՐՈՑԻ ԴԱՍԱԽՕՍՆԵՐՈՒՆ
*ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԱԾ Հ.Յ.Դ. ԴՊՐՈՑԻ ՈՒՍԱՆՈՂՆԵՐՈՒՆ ԿՈՂՄԷ*

*Այսօր կիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին Ֆլօրիա ճաշարանը կը հրաւիրուին Հ. Յ.Դ.դպրոցի բոլոր ուսանողները եւ փափաքող ընկերները:*



ՏԻԿԻՆ ՍԻՐՈՒՇԻ ՆՇԱՆԵԱՆ
Մօննա-վաննայի դերին մէջ

## ՓԱՐԻԶԱՀԱՅ ՏՐԱՄԱԹԻՔ ԹԱՏԵՐԱԽՈՒՄԲ

7րդ տարի — ղեկավար՝ Տ. ՆՇԱՆԵԱՆ — 116րդ ներկայացում

ԹԱՏՐՈՆ ALBERT Ier 64 RUE DU ROCHER

Բացում 7րդ Թատերաշրջանի

5 ՀՈԿՏԵՄԲԵՐ ԿԻՐԱԿԻ — ՑԵՐԵԿՈՅԹ - ԵՐԵԿՈՅԹ

Ի պատիւ դերասանուհի

ՏԻԿԻՆ ՍԻՐՈՒՇԻ ՆՇԱՆԵԱՆԻ

Ա. անգամ ըլլալով պիտի ներկայացուի Մ. ՄԷԹԷՐԼԻՆԿԻ

## ՄՕՆՆԱ-ՎԱՆՆԱ

պատմական հռչակաւոր Թատերախաղը (3 արար)
բեմադրութիւն եւ Թարգմանութիւն Տ. ՆՇԱՆԵԱՆԻ

*Կը մասնակցին՝ Փարիզահայ բեմի լաւագոյն ուժերէն՝ ՏԻԿԻՆ ՍԻՐՈՒՇԻ ՆՇԱՆԵԱՆ (Մօննա-Վաննա), Ա. ԳՄԲԷԹԵԱՆ (Կիտօ), ՏՐԴԱՏ ՆՇԱՆԵԱՆ (Մառքօ), Շ. ՍԱՐԵԱՆ (Բրէնզիվալ), եւն.:*

ՑԵՐԵԿՈՅԹ ԺԱՄԸ 15ԻՆ — ԵՐԵԿՈՅԹ ԺԱՄԸ 20.30ԻՆ
(երեկոյթը կ'աւարտի ճիշդ ժամը 23.30ին)

*ԱՆՕՐԻՆԱԿ ԲԵՄԱԴՐՈՒԹԻՒՆ — 30 ՀՈԳԻ ԲԵՄԻ ՎՐԱՅ — ՃՈԽ ՏԷՔՈՐ ԵՒ ՀԱԳՈՒՍՏ*

(Գիները սովորական) — *Անպայման փնտռեցէք ճոխ յայտագիրը*

*Տոմսերը կը ծախուին ՅԱՌԱՋի խմբագրատունը եւ բոլոր հայ ճաշարանները, իսկ կիրակի առաւօտները եկեղեցւոյն դիմացի սրճարանը:*



Le Gérant H STEPHAN





## Հ. Յ. Դ.

ՓԱՐԻԶ

*ԻՍԻ - ԼԸ - ՄՈՒԼԻՆՈՅԻ Ջաւարեան ենթակոմիտէն կը հրաւիրէ Վռամեան, Մուրատ եւ Միջօ խումբերու բոլոր ընկերները անխտիր այսօր՝ Կիրակի կէսօրէ վերջ, ժամ 2ին, սովորական հաւաքատեղին: Օրակարգ.— Զեկոյց Ը. Շրջանային ժողովի մասին: Ժողովէն վերջ բոլոր ներկայ ընկերները խմբովին պիտի լուսանկարուին:»*